# ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ԿՈՒՏԱՅ ԻՐ ՎՃԻՌԸ...

Հայկական դատը չարունակական ողբերգութեանց մէկ շղթայ է եղած: Արտաքին թէ ներքին ազդակները յաճախ դասաւորուած են ի վնաս մեր դատի: Հայ քաղաքական միտքը մեծ եռանդ է սպառած, դիւանագիտական ճամբաներ մաշեցուցած, դրական իմաստով լուծելու համար մեր հարցը: Ողջ հայ պատմութեան ընթացքին բացասական ազդակները իրար վրայ դիզուելով, քայքայեր, ջլատեր են մեր ձգտումները եւ երբեք չենք կրցեր իրականացնել մեր քաղաքական ցանկութիւնները: Հայաստանի անկախ գոյութիւնը սահէպ կ'ըեր է ազդեցութիւնը վնասաբար ու բացասական այդ ազդակներու: Վերջին դարերու մեր պատմութիւնը արդէն հանապազօրեայ մէկ ողբերգութիւն է եղած:

Կորսնցուցած ենք մեր հողը, համբանքը, մարտունակութիւնը, բնաւորութեան լաւագոյն գծերը: Զանգուածները դարձեր են հօտ, առաջնորդները ջախջախուեր կամ օտարին ...

... քականութեան դէմ, Իսրայէլ Օրիները խենթ ցուցամոլ ենք համարեր: Մեր մշակոյթը թերագնահատած ենք օտարներու առջեւ: Եւրոպական մշակոյթն ենք իրական մշակոյթ համարեր, մերը նկատեր «ծխական», անարժէք, հեգնանքի արժանի:

Մեր բարքերը, սովորութիւնները նուազ գնահատանքի են արժանացեր, քան օտարինը, մանաւանդ եւրոպականը: Մեր մտաւորականներու շատերը, ժողովուրդի մէկ խոշոր մասը եւրոպական խօսքի կարօտն են ապրած:

Հին ատենները Բիւզանդիոնը եւ Պարսկաստանն ենք երազեր, նոր օրերուն՝ Մոսկուա ու Փարիզ:

19րդ դարու երկրորդ յիսնամեակին հոգեպարար թարմութիւն էր մտած մեր կեանքին մէջ. մեր մտաւորականութեան ազատատենչ եւ յառաջաւոր տարրերը ձգտեր են հոգեփոխել մեր ժողովուրդը, վերակենդանացնել անցեալի, դարերու խաւարին մէջ մոռցուած մեր լաւագոյն զգացումները ...

...

... ...: Օտարը արտաքսելու համար մեր խակ եռանդով լորձնաչուրթն փառաբաներ ենք մեր «տէրերը»: Սեփականը արհամարհեր, մատներ: Յաճախ դաւեր ենք մեր ազգային քաղա-

... մեր երկրը:

Սուտը, դաւը, նախճիրը թագաւորեց մեր երկրին մէջ: Օտարը իր թաթը տարածեց եւ երկրէն դուրս, վարկեց եւ դուրսի, գաղութի հայու-

...

# «ՀԱՅԿ. ԴԱՏԸ՝ ԹՐՔԱԿԱՆ ԱԿՆՈՑՈՎ»

Գ.

Կ'ըսէինք թէ՝ Թուրքիոյ Հայերու «երջանկութեան» առասպելը ոչ Զիա Շաքիրի յատուկ է, անշուշտ, ոչ ալ Թրքական այս կամ այն կառավարութեան: Հայկ. հարցի ամբողջ տեւողութեան՝ Թուրքը, Թրքութիւնն ու Թուրքիան երկու կարծիք յայտնած չեն այդ մասին:

Ատիկա, ինչքան ալ ժպիրհ, քաղաքական հասունութիւն մըն է, որմէ ...

... այսօր ալ գոյութիւն ունի: Ու գոյութիւն ունի նոյն իսկ Թուրքիայէն դուրս,— Նիս, Մարսէյլ, Փարիզ, Սոֆիա, Պուքրէշ կամ Եգիպտոս: Ճիւմհուրիէթ մասամբ իրաւացի է, երբ խոր ըղձանք մը կը մատնանշէ՝ Հայերու քով «հայրենիք վերադառնալու»: Շատերու քով այդ «հայրենիք»ը ծննդավայրն է լոկ: Թուրքիան, նոյն իսկ ... Մօքերու մէջ դեռ թարմ է, ...

...

Ա. ՈՍԻԲԱՐՏԵԱՆ

...

## ՆԻՒԹԵՐ ՀԱՅԿԱԿԱՆ ԳՈՒՆԴԵՐՈՒ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԱԼՈՅՍԻՆ

## (ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆԻ ՄԸ ՅՈՒՇԵՐԸ)

Կէս գիշերը անցած է, երբ մեր հետեւոր պահակախումբերն ալ հաւաքուած են: Յառաջապահ, վերջապահ կ'որոշուի եւ ճամբայ կ'ելլենք:

Լուսաբացին ահուելի ցուրտը եւ ձիւնամրրիկը մեզ կը հալածէ: Փոքրիկ քրտական խումբեր մեր ճամբան կարել կ'ուզեն, սակայն ի զուր, եւ կը շպրտենք զիրենք եւ կ'իջնենք Նո-

...

... զինուորները ինչ խորթ վերաբերմունք ցոյց տուած էին մեւս ճակատներուն վրայ:

Սեպուհին հետ կ'երթանք Զօր. Յովսէփեանի մօտ: Զինուորական դերագոյն խորհուրդ կը կազմուի զօրախումբի յետագայ շարժումները դասաւորելու եւ վճիռներ տալու համար:

Կացութեան մասին ...

...

... ծագոյն չափերու հասած էր: Բանակը ընկերական, մտերմական եւ ընտանեկան օրէնքներու ենթակայ չէ: Բանակի մէջ պէտք է տիրապետէ միայն ու միայն երկաթեայ կարգապահութիւն եւ դաժան, բիրտ ոյժը: Մահապատիժը կարգապահութեան խարիսխը կը կազմէ: Ֆրանսական հանրապետական ազատ երկրի մէջն իսկ, պատերազմի ընթացքին, մահապատիժը սանձարձակ գործեց, բանակի մէջ եղած ըմբոստութիւնները խեղդելու համար: Այդ օրհերուն մէջ կարելի է յիշել եւ Դիմաքեանը ֆրանսահայ կամաւորներու շարքէն:

Որքան կը յիշեմ, Հայաստանի կառավարութեան մէջ որոշ անհատներ մինչեւ իսկ մահապատիժի դէմ էին: Կը լսէինք թէ Երեւանի հրապարակին վրայ կախաղան մը բարձրացուած էր դասալիքները պատժելու համար, սակայն մահապատիժի մը գործադրութիւնը չեմ յիշեր: Մեր գունդին մէջ գոնէ չքաշուեցանք զայլիչ միջոցին դիմել:

Փիրվալուի մէջ ամէն գիշեր 10 հոգի կը փախչէին, բոլորն ալ անխտիր Շիրակի շրջանի գիւղերէն: Թէեւ ճաշակածէին առճկական բռնութեան, ա-

... ւերածութեան եւ յափշտակութեան դառն պտուղը, սակայն տարրական պատուախնդրութեան նշոյլ իսկ ցոյց չէին տար: Գուլս կանչեցի ձիաւորներու յիսնապետ Արշակը: Հրամայեցի պահակութեան խիտ ցանց մը հաստատել շրջակայ բլուրներու եւ ճամբաներու վրայ եւ անձամբ հսկել, յօրինակ այլոց գէթ մէկ երկու դասալիք բռնել: Գործի կ'անցնի Արշակը եւ առաւօտ կանուխ մեզի կ'առաջնորդէ 3 դասալիք (Ալեքսանդրապոլի շրջանէն): Անմիջապէս դաշտային դատարանը կը կազմուի եւ յետ քննութեան երեք ալ կը դատապարտուին մահուան: Ամբողջ գունդին ներկայութեան՝ հրապարակաւ կը կարդացուի մահուան պատիժը,— գնդակահարութիւն:

Տասնեակ մը յառաջ կ'անցնի, պետը կը հրամայէ:— Նշա՛ն ... Կրա՛կ ... Ու երեք դասալիքներ անշունչ կ'իյնան քարէ ցածլիկ պատին առջեւ: Այնուհետեւ ոչ մէկ դասալիք այդ շրջանի զինուորներէն:

ԳՆԴ. Տ. ԲԱՂՏԱՍԱՐԵԱՆ

(13) (Շար.)

# Հ. ԳԱԲՐ. ՄԵՆԵՎԻՇԵԱՆԻ ԿԵԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾԸ

— o —

ՎԻԷՆՆԱ, 18 Նոյ. (Յառաջ).—Վի-ԷՆնայի Մխիթարեան Միաբանութիւ-նը սգով համակուած է այսօր: Անոր նը սգով համակուած է այսօր: Անոր անդամներէն մին Հ. Գար-[illegible]

[illegible]

Այդու անկիւնում, հին լօրենու ճիւ-ղերին նստած է ագռաւատրեկների ե-րամը և նրանցից մէկը ոգեւորուած եր-գում է իր ընկերների համար ինչ որ մի տեղ լսած Մրրկահաւի երգը (*):

ՄԱՔՍԻՄ ԿՈՐՔԻ

Թարգմ. ՎԱՐԴ. ՍԻՄՈՆԵԱՆ

(*) Այստեղ վերջանում է ցարական գրաքննութեան արգելած բնագիրը եւ սկսւում է Մրրկահաւի երգը:

տատրիմ մշակը, մինչեւ որ պարա-գաները եւ առողջական վիճակը կը ստիպեն հրաժեշտ տալ անոր: 1889ին արդէն կը գրկուի արեւելք՝ գպրոցա-կան մարզին մէջ գործելու. այդ տա-րին նոր շրջան մը կը բանայ անոր կեանքին մէջ հայ մանկաւոյ դաս-տիարակութիւնը, որ գրական ասպա-րէզին չափ սրտին մօտ էր: Կը գործէ [illegible]

[illegible]

լուած էր կեանքի բոլոր դժուարութիւն-ներուն, կը հեռանայ մեզմէ բայց կը թողու իր ետին յաւերժական յիշա-տակներ՝ իր գիրքերը: Անոր բեղուն գրիչը մէկէ աւելի երկերու ծնունդ տուած է, եւ մենք գրքերուն մէջ կը տեսնենք թէ որչափ լայն էր անոր մտ-քի մշակութիւնը: Յիշատակենք մի-այն գլխաւորները: Բնապատմութեան նուիրած ունի երեք հոյակապ հատոր-ներ.— 1. Կենդանաբանութիւն, Վիէն-[illegible]

# ԳԻՒՂԻՍ ԱՇՈՒՆԸ

— o —

Աշուն է: Օտար լուսաւոր մայթե-րուն վրայ սառն քամին կը սուլէ ննդ ու անմաքուր չրթներով:

Ծառերը ոգաւոր հարսի նման կ'ար-տասուեն՝ մերկացած իրենց դալար տերեւներէն, որ թափած մայթերուն [illegible]

[illegible]

լուրջ ու խոր ուսումնասիրած էր այդ տարրկաներուն հայկ. յորջորջումնե-րը: Կը կորսնցնէ լեզուագէտ մը եւ գլխաւորաբար քաջ հայերէնագէտ մը, բայց եւ կը պակսի ոգեւոր հայրենա-սէր մը, որ խորապատուկ խանդով փարած էր հայ մշակոյթին ու լեզ-ուին:

Հ. Պ. ԽՍԱՊԱԼԵԱՆ

[illegible]

գործարաններու խլացուցիչ ժխորը կուզայ ցնցել լռութիւնս, հոգիս կ'ար-տասուէ դարձեալ, ինքզինք գտնելով անողոք իրականութեան առջեւ:

Դեղնած տերեւի պէս փոշիացած է գիւղս իր բոլոր ապրումներով: Ու-կորնե՞ր, բուրդ կազմած ոսկորներ հիմակ այնտեղ: Հոգիս կ'արտասուէ ու պիտի արտասուէ մեծ օրուան հա-[illegible]

# ՄԻՏՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

## ԹԱՐԳՄԱՆՉԱՑ—ԴՈՒՐԵԱՆ ԳՐԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿ

— o —

Իզմիրեանց մրցանակին նման՝ Ե-րուսաղէմի պատրիարքարանը հաս-տատած է գրական նոր մրցանակ մը, «Թարգմանչաց - Դուրեան գրական մրցանակ» անունով:

1934ին, առաջին անգամ ըլլալով, մրցանակի յանձնաժողովին ներկայա-[illegible]

[illegible]

Ա. մրցանակի արժանի դատած է Գարեգին արք.ի գործը, որ կը ստա-նայ 40 ոսկիէին, Բ. մրցանակի՝ Բաս-մաջեանի գործը, որ կը ստանայ 30 ոսկիէին, Գ. մրցանակի՝ Օշականի եւ Կանայեանի գործերը, որոնք կը ստանան 25ական ոսկիէին:

## ՀԱՄԲԵՐԴԻ ՊԵՂՈՒՄՆԵՐԸ

— o —

Ինչպէս գրած էինք, ռուս եւ հայ գիտնականներ պեղումներ կատարած են միջնադարեան Համբերդ ամրոցին մէջ, որ կը գտնուի Արագածի ստորո-տը:

[illegible]

# ՀԱՅ ԺՈՂՈՎ.ՐԴ. ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

— . —

## ՏԱՐՕՆԻ ՕՐՕՐԵՐԷՆ

— . —

վերան աշուն դառնէր գարուն,
Ճամբան բացուէր դարխկներուն,
Ղարիպ դառնէր իր վարանին,
Զմեռնէր ղարիպ մուրատ սրտին,
Ղարիպ աղբէր:
Ես կ'աղաչեմ քու ամին,
Անփորձ մնայ ծովու կամին,
Դու (1) խշիմիս (2) իրտ քու դամին
(3)
Քու յուշք ու միտք նշանածին:
Ղարիպ աղբէր:
Գրեմ թուղթ մը տամ ի սային, (4)
Արուն յիջի մէջ իմ սրտին,
Քիւրտը խլեց զքու նշանած,
Գըլօ (5) իմալ (6) խապուլ էնեց Ած.
Ղարիպ աղբէր:
Քիւրտը (7) փլուց մեր օճախներ,
Քաշել չի գայ այս սեւ ցաւեր,
Երթամ յընկնիմ (8) յեւման գետեր,
Ուր չտեսնեմ նոր զուլումներ:
Ղարիպ աղբէր:
Վոսխաթ (10) չէնիմ լաւ իմանաս,
Զրտ շուն ազգի ցաւը չմոռնաս,
Քիւրտ (11) բէ քաղտէ (12) զէտ դէ գենաս
Հաց (13) վըր ծնկան աչք վըր կնկան
Զեղնի մոռնաս:

Հաւաքեց՝ Մ. Բարխեան

(1) Անփորձ, 2) հետ, 3) մտածո-ղութիւն, 4) թղթատար, 5) արդեօք, 6) ինչպէս, 7) ընդունիլ, 8) փլցուց, 9) վարար, 10) յանձնարարութիւն, 11) անխտահելի, 12) այդ. ալ, 13) վը-րայ:

[illegible]

[illegible]

Թեան պահանջներով ու իրականու-թեան վրայ կը նետէ երեւակայական աշխարհ մը: Իր հերոսները կը վա-զեն, կ'աշխատին սեւ կամ այլ գոյնի գործերով, կը սաւառնին, կը գահա-[illegible]

[illegible]

տաքեալ մը, միւս աչակերտները, ոտքի ըլլան թէ նստած, կը խօսին, կը բացատրեն, կ'ունկնդրեն, վերջապէս զբաղած են: Կեանքը աւելի շեշտուած է պաստարկողներուն մէջ:

[illegible]

րը, որմանկարները, սիւները, խոյակ-ները, խարխուլները, միւսիոնները եւ վերջապէս առաւօտեան, երեկոյեան, եւ տուընջեան ու գիշերային երկնա-կամրները խրացուած ու վերարտադր-[illegible]

[illegible]

Թաւալած հանդէսէ հանդէս կ'երթար անդին մեծ նկարիչը կը սանդծագոր-ծէր: Մինչդեռ Թիցիանս էր ժամա-նակէն մեծ մասեր տուած էր երեւա-լու համար խմբումնեու եւ ճաշկե-[illegible]

[illegible]

Ու կ'ունենաս երջանիկ յուզում մը, ինքզինքդ հարուստ կը կարծես հէք-եաթային գանձերով, անհուն սարե-ցութիւն մը կը դարնէ քեզ, գանկդ կը մեծնայ եւ ուղեղիդ մէջ աշխարհ մը կը շարժի, աչքերուդ ու յիշողու-թեանդ մէջ կ'ունենաս գոյներու կայ-սերական նուագահանդէս մը, յարա-շարժ տեսիլներ, երկինքը կապուած կը զգաս երկրին իր ամբողջ պատմու-[illegible]

գոյն ու կապոյտ բոցերով կը նկա-րէր: Կտաւին վրայ կը զարնէր բոցե-րը, հուրերը, կայծերը, ցոլքերը, ինչպէս նաեւ մուխերն ու մոխիրները:

Սաղայէլ մը որ անմահութիւն տը-ւաւ տաքեալներուն, հրեշտակնե-րուն, սուրբերուն եւ ինքզինքին:

Ա՜հ, Սատանայ, ի՞նչպէս կը սիրեմ քեզ:

ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ

[illegible]

որ կը տեսնուի արեւելեան հնագիտու-թեան մէջ:

այսպէս արտայայտուելով՝ նպաստ մը կը բերեմ խաղաղութեան: Խաղաղութիւնը հասարակաց նպատակակէտ մըն է մեր երկու երկիրներուն համար: Մեր երկիրները կը սիրեն անհամաձայնութիւնները լուծել խաղաղասիրական եղանակներով: Բայց մեր խաղաղասիրութիւնը նշան մը չէ տկարութեան, ոչ ալ վախկոտութեան,— թող ոչ ոք խաբուի: Իսկ անոնք որ սուրին կը յանձնեն անհամաձայնութեանց հարթումը, լաւ թող գիտնան որ հոգեւին իրենց ազատութեան փարած ազգերը վարժ են գործածելու ամէնէն ահաւոր զէնքերը, զորս երբեք ստեղծած ըլլայ գիտութիւնը, եւ այնպիսի քաջութեամբ մը, որ միայն հիացում կը պատճառէ :

## ՅՈՅՆ ԿՐԵՍՈՍԸ, ԶԱԽԱՐՈՖ ՄԵՌԱՒ

Յոյն կրեսոսը, Զախարոֆ, յանկարծամահ եղաւ Մոնթէ-Քարլոյի մէջ, ուր գացած էր շաբաթ մը առաջ: 87 տարեկան էր, բայց տակաւին քաջառողջ :

Ծնած է 1849ին Փոքր Ասիոյ մէջ, դեռ պատանի՝ Պոլիս գնաց: Ամէն արհեստ փորձեց, ամէն տեսակ գործի մէջ մտաւ,— կառապան, թարգման, միջնորդ: Յետոյ Լոնտոն անցաւ,— խելացի՝ հասկցաւ թէ զէնքի առուտուրը ինչ հեռանկար կը ներկայացնէ հարստանալու համար: Վիքըրս ընկերութեան ներկայացուցիչ դառնալով՝ խառնուեցաւ միջազգային առեւտուրին: Հսկայական հարստութիւն դիզեց: Կարելի է ըսել թէ կը սնանէր պատերազմով, որովհետեւ զէնքի առուտուրի համար կը լարէր քաղաքական էնթրիկներ: Զախարոֆն էր որ զինեց Ռուսիան, եւ մեծ պատերազմին՝ օժանդակեց դաշնակիցներուն: Իր ազդեցութեան տակ կը գտնուէր Վէնիզէլոսը, մեծ կշիռ ունէր նաեւ անգլիական քաղաքական շրջանակներու մէջ :

Մեծապէս օժանդակած է գրական ու գիտական հրատարակութիւններու : Հարիւրաւոր միլիոններու հասնող իր հարստութիւնը դիզելէ վերջ, ինչպէս ըսինք՝ զէնքի առուտուրով, մեկենաս դարձաւ տաղանդաւոր արուեստագէտներու եւ գրագէտներու :

Դղեակ մը ունէր Փարիզի մօտիկ, եւ ծաղկալէտ ապարանք մը Փարիզի մէջ, Հօշի պողոտային վրայ: Տարիքը առած էր արդէն, երբ սիրահարեցաւ փոքրիկ իշխանուհիի մը,— իշխանուհին ամուսնացած էր եւ ամուսնալուծումը անկարելի: Սպասեց որ մեռնի իշխանուհիին ամուսինը, իրեն պէս տարէց: Մեռաւ ամուսինը եւ 1924ին ամուսնացաւ իշխանուհիին հետ: Սակայն քանի մը ամիս վերջ իշխանուհին ալ մեռաւ :

---



---


**Le Gérant: H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Damesme. PARIS (13)**